Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 10 ՄԱՅԻՍ 1950

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, Հեռախոս՝ 2—52—78։

---

# ԳՅՈՒՂԱԿԱՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԱՌԱՋՆԱՀԵՐԹ ԽՆԴԻՐՆԵՐԸ

*Ռեսպուբլիկայի կոլխոզային գյուղացիությունը, լայնորեն ծավալելով Սովետական Հայաստանի 30-ամյակի պատվին ծավալված սոցիալիստական մրցումը, հաջողությամբ կատարում է գարնան-գյուղատնտեսական աշխատանքները։ Այժմ կոլխոզային գյուղը թևակոխել է մի պատասխանատու էտապ՝ դաշտային բարձր ագրոտեխնիկական կանոններով մշակումն է։*

*Գյուղատնտեսական աշխատանքների ներկա վճռական շրջանում չափազանց մեծ նշանակություն ունի մասսաների մեջ կատարվող քաղաքական ագիտացիան։ Ներկայումս քաղաքական-մասսայական ագիտացիայի գլխավոր խնդիրն է՝ մոբիլիզացնել կոլխոզային գյուղացիության, սովխոզների ու ՄՏ կայանների աշխատավորության ուժերը խնամքով անցկացնելու ցանքատարածությունների և պլանտացիաների մշակությունը, ժամանակին և բարձր որակով կատարել փխրեցման, կուլտիվացիայի, քաղհանի, ո-*

ոռոգման, օժանդակ սնուցման, նոսրացման և այգիների բուժման աշխատանքները։ Գյուղական ագիտատորն իր ամենօրյա հետևողական աշխատանքով, համոզիչ խոսքով, պետք է մեր կոլխոզնիկների սրտերում սեր ու հարգանք առաջացնի դեպի ագրոտեխնիկական կանոնները և պայքարի կոչի՝ դրանց անթերի կատարման համար։

Ամբողջ ագիտացիոն-մասսայական աշխատանքները պետք է ուղղել՝ բարձրացնելու կոլխոզային գյուղատնտեսության արտադրական ակտիվությունը, է՛լ ավելի ամրապնդելու աշխատանքային կարգապահությունը, լայն ծավալելու սոցիալիստական մրցությունը, քննադատության ենթարկելու ինքնահանգստացման տրամադրությունները։

Ագիտացիոն-մասսայական աշխատանքը հարկավոր է տեղափոխել դաշտ՝ բրիգադա, օղակ։ Ագիտացիան անհրաժեշտ է սերտորեն կապել կոլխոզի, սովխոզի և ՄՏ կայանների առջև դրված կոնկրետ խնդիրների հետ, նրա միջոցով անհրաժեշտ է պարզաբանել, թե յուրաքանչյուր բրիգադայի, օղակի, կոլխոզնիկի աշխատանքը ինչ նշանակություն ունի կոլխոզի տնտեսական ամրապնդման, կոլխոզնիկների նյութական-տնտեսական դրության բարելավման, մեր Հայրենիքի հզորու-



թյան ամրապնդման, նրա հետագա զարգացման ու ծաղկման համար։

Որպեսզի ագիտացիան լինի գործարար, կոնկրետ և նպատակասլաց, անհրաժեշտ է, որ զրույցից առաջ ագիտատորը ծանոթանա այն բանին, թե իր ունկնդիրներն ինչպես են աշխատել վերջին օրերին, ո՞վ է կատարել օրվա առաջադրանքը, ինչպիսի՞ որակով է կատարել այն։ Իր ագիտացիան գործնական դարձնելու նպատակով, նա պետք է խորը թափանցի կոլխոզային տնտեսության ներքին կյանքի մեջ, համարձակ քննադատի ետ մնացողներին և պաշտպանի առաջավորների օրինակելի նախաձեռնությունները։ Այդպես են աշխատում Ստեփանավանի շրջանի Լոռիբերդ գյուղի կոլխոզի ագիտատորներ Առաքելյանը և Միքայելյանը։ Նրանք նախքան դաշտ գնալը, խնամքով նախապատրաստվում են օրվա զրույցին, մանրամասն կերպով ծանոթանում իրենց բրիգադայի կատարած աշխատանքների հետ, մասսայականացնում են առաջավորների փորձը և քննադատության ենթարկում այն կոլխոզնիկներին, որոնք ետ են մնում, չեն կատարում օրվա առաջադրանքները։

Կոլխոզային կյանքին վերաբերող արտադրական կոնկրետ թեմաներով զրույցներ

անցկացնելու հետ միասին, ագիտատորները պետք է կոլխոզնիկներին պարզաբանեն պարտիայի ու կառավարության որոշումները, միջազգային դրության հարցերը։

Ինչի մասին էլ որ զրուցի ագիտատորը, նա իր առջև պետք է ունենա միշտ մի նպատակ՝ աշխատավորների ստեղծագործական ակտիվությունը մոբիլիզացնել՝ պարտիայի և սովետական իշխանության կողմից առաջադրված խնդիրների անթերի կատարման համար։

Գյուղում կատարվող քաղաքական ագիտացիայի կարևորագույն խնդիրներից մեկն էլ հանդիսանում է կարգապահության և աշխատանքի կազմակերպման հարցերը կոլխոզներում։ Մեր կոլխոզնիկների ճնշող մեծամասնությունը բարեխղճորեն և ազնվորեն է աշխատում, նրանք անձնվիրաբար իրենց ուժերն ի սպաս են դնում կոլխոզների հանրային հարստությունն էլ ավելի բազմապատկելու, իրենց աշխատանքով ամրապնդում են սովետական պետության հզորությունը։ Բայց միաժամանակ, կոլխոզներում կան դեռևս առանձին մարդիկ, որոնք քողարկվելով կոլխոզնիկի անվան տակ՝ չարամտորեն խուսափում են հանրային աշխատանքից, վարում են պորտաբույծ կյանք։



Նմաններն իրենց վարքագծով հաճախ խախտում են կարգապահությունը, վնաս են հասցնում կոլխոզին։ Դրա համար էլ ագիտատորը պետք է քաղաքական ագիտացիան համարձակորեն ուղղի աշխատանքային կարգապահությունը խախտողների, կազմալուծիչների դեմ։

Մեր գյուղական ագիտատորների մեծ մասը կոլխոզային արտադրության առաջավորներ են, նրանք ոչ միայն պետք է մասսայականացնեն գյուղատնտեսության նորագույն նվաճումները, այլև հենց իրենց աշխատանքի փորձով սովորեցնեն կոլխոզնիկներին։ Այդպես է աշխատում օրինակ, Նոր Բայազետի շրջանի Բատիկի անվան կոլխոզի օղակավար, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս, ագիտատոր Հրաչիկ Զաքարյանը։ Բրիգադայի անդամներին նա սիստեմատիկաբար պատմում է իր փորձի մասին և կոնկրետ կերպով կիրառելով իր աշխատանքի մեթոդները, պրակտիկ կերպով ցույց է տալիս, թե ինչպես պետք է ստանալ բարձր բերք։

Ագիտատորի այս աշխատանքը տվել է մեծ արդյունք։ Այդ բրիգադան ժամանակին ավարտել է ծխախոտի սածիլումը և սկսել ոռոգման, քաղհանի աշխատանքները։

Սակայն մեր ոչ բոլոր ագիտատորներն են,

որ խորապես հասկանում են գյուղատնտեսական աշխատանքների այս կարևոր ժամանակաշրջանում իրենց վրա դրված պարտականության ամբողջ լրջությունն ու պատասխանատվությունը։ Որոշ տեղերում ագիտացիոն աշխատանքը տարվում է չոր ու անկենդան, կտրված կոլխոզնիկների առջև դրված գործնական խնդիրներից։ Բրիգադաներում չեն մասսայականացնում և կիրառում առաջավորների փորձը, լույս չեն ընծայում իլյիչովկաներ, չեն գործում շրջիկ գրադարաններն ու ագիտ-բրիգադաները։

Ցանքի մշակության այս կարևոր էտապում քաղաքական ագիտացիայի առաջնահերթ խնդիրն է՝ լայնորեն ծավալել սոցիալիստական մրցությունը, բոլոր կոլխոզնիկներին ներգրավել այդ մրցության մեջ, մոբիլիզացնել նրանց ուժերը ցանքը խնամքով մշակելու, ժամանակին հասունացնելու և կազմակերպված անցկացնելու բերքահավաքը։ Սոցիալիստական մրցությունը հաջողություն կունենա միայն այն ժամանակ, եթե պարտավորությունները սիստեմատիկ ստուգվեն և արդյունքները հայտնի դառնան բոլոր մրցողներին։ Այդ բանի համար աշխատավորները պետք է զրույցներ անցկացնեն մրցության արդյունքների շուրջը, ինչպես նաև



կոլխոզների ժողովներում ու արտադրական խորհրդակցություններում քննարկեն այդ արդյունքները։ Մրցության արդյունքները մասսայականացնելու գործում պետք է լայնորեն օգտագործել ցուցադրական ագիտացիայի բոլոր միջոցները — պատի թերթերը, իլյիչովկաները, պլակատները, պատվո տախտակները, մրցության ցուցանիշների տախտակները։

Մեր ռեսպուբլիկայի կոլխոզային գյուղի աշխատավորությունը գարնանացանի հաջող նախապատրաստումով և անցկացումով զգալի հաջողություններ է ձեռք բերել բարձր բերք ստանալու համար։ Այժմ անհրաժեշտ է ամրապնդել ձեռք բերված հաջողությունները գյուղատնտեսական կուլտուրաների օրինակելի մշակությամբ և դրանով իսկ նախապայմաններ ստեղծել 1950 թվի բերքահավաքը կազմակերպված անցկացնելու համար։

◆

## ԼԻԴԻԱ ԿՈՐԱԲԵԼՆԻԿՈՎԱՅԻ ԵՎ ՖԵՈԴՈՐ ԿՈՒԶՆԵՑՈՎԻ ՕՐԻՆԱԿՈՎ

*Խնայած հումքի հաշվին արտադրանք տալու համար Մոսկվայի «Փարիզյան կոմունա» ֆաբրիկայի ստախանովական բանվորուհի Լիդիա Կորաբելնիկովայի հայրենասիրական նախաձեռնության և Կաշվեղենի ֆաբրիկայի վարպետ Ֆեոդոր Կուզնեցովի առաջարկության մասսայականացման և կիրառման գործում խոշոր անելիքներ ունեն ագիտկոլեկտիվները, մեր բոլոր ագիտատորները։ Ագիտկոլեկտիվները իրենց խորհրդակցություններում քննության առնելով այդ կարևոր նախաձեռնությունների մասսայականացման հարցը, պետք է կոնկրետ միջոցառումներ մշակեն, ելնելով այն բանից, թե իրենց ձեռնարկության յուրաքանչյուր ցեխում, բրիգադայում ինչ կարելի է անել հումքը խնայելու համար, ինչումն է կայանում այդ տեղամասի ագիտատորի անելիքները։ Ագիտկոլեկտիվում կոնկրետ*



*ցուցումներ ստանալով իր անելիքների վերաբերյալ, ագիտատորին այնուհետև հեշտ կլինի մասսայականացնել այդ նախաձեռնությունը և կոնկրետ արդյունքների հասնել։*

*Այս ասպարեզում մեր ագիտկոլեկտիվի և ագիտատորների տարած աշխատանքը արդեն տվել է առաջին արդյունքները։*

*Երբ հայտնի դարձավ Լիդիա Կորաբելնիկովայի նախաձեռնությունը և ապա Մոսկվայի Կաշվեղենի ֆաբրիկայի վարպետ Ֆեոդոր Կուզնեցովի առաջարկությունը՝ այդ նախաձեռնության հիման վրա հումքի կոմպլեքսային տնտեսումների համար մրցություն ծավալելու մասին, մենք ագիտկոլեկտիվում մանրամասն ուսումնասիրության առանք այդ հարցը։ Պարտիական կազմակերպության բյուրոյի հանձնարարությամբ ագիտկոլեկտիվը մշակեց հումքի խնայողության հարցի շուրջը անցկացվող զրույցների ցիկլ՝ հետևյալ թեմաներով.* «Խնայողության ռեժիմը, որպես սոցիալիստական կուտակումների հիմնական աղբյուր», «Մոսկվայի արտադրության նորարարներ Լ. Կորաբելնիկովայի և Ֆ. Կուզնեցովի նախաձեռնությունը հումքի տնտեսումների համար մրցություն ծավալելու մասին», «Փափուկ և կոշտ կաշվի միայն 2 տոկոս

տնտեսումով ֆաբրիկայի կոլեկտիվը հնարավորություն կունենա ամսվա մեջ մեկ և կես օր աշխատել տնտեսած հումքի հաշվին», «Ի՞նչ կտանք մենք ֆաբրիկային և պետությանը, եթե ամսվա մեջ մեկ և կես օր աշխատենք տնտեսած հումքի հաշվին» և այլն։

Ագիտատորներին առաջադրանք տրվեց՝ յուրաքանչյուր հարցի վերաբերյալ անցկացված զրույցը անպայման կապել տվյալ ցեխի, ագրեգատի, բրիգադայի բանվորների աշխատանքի հետ, կոնկրետ օրինակներով ցույց տալ, թե ինչպես կարելի է խնայել հումքը, օգնել բանվորներին հասնելու այդ բանին։

Այս զրույցները բանվորների մեջ մեծ խանդավառություն առաջացրին և նրանք նորանոր պարտավորություններ ստանձնեցին հումքը խնայելու, Մոսկվայի արտադրության նորարարներին գործով պատասխանելու համար։ Իսկ ագիտատորներն ամենօրյա ագիտացիոն-մասսայական աշխատանքով օգնում էին նրանց՝ վերցրած պարտավորությունները կատարելու համար։

Բերենք մի քանի օրինակներ։

Հումքը խնայելու գործում բանվորներին օգնելու համար ձևման ցեխի ագիտատոր ընկ.



է. Հովհաննիսյանը որոշեց լայնորեն մասսայականացնել հենց նույն ցեխի ստախանովական ձևող Գ. Նալչաջյանի աշխատանքի փորձը։ Իր առաջին մեկ-երկու զրույցի ժամանակ ագիտատորը բանվորների հետ խոսեց այն մասին, որ անվանի ձևողի աշխատանքում ոչ մի «գաղտնիք» չկա, որ այդպես կարող է աշխատել յուրաքանչյուր ձևող, պատմեց, թե Նալչաջյանն իր լավագույն աշխատանքով ինչ օգուտ է բերում ֆաբրիկային, պետությանը։ Եթե յուրաքանչյուր ձևող աշխատի Նալչաջյանի պես, ասաց ագիտատորը, ապա ֆաբրիկան այս տարվա ընթացքում քանիերկու օր կարող է աշխատել տնտեսած երեսացու կաշվի հաշվին։ Հետագա զրույցների ժամանակ ագիտատոր Հովհաննիսյանը խնդրեց Նալչաջյանին՝ պատմել իր աշխատանքի փորձի մասին, ցույց տալ, թե ինչպես է նա ձևում։

Եվ ահա ագիտատորի այդ զրույցները փաստորեն վերածվեցին տեխնիկայի տիրապետման պարապմունքների։ Անվանի ձևող Նալչաջյանը մանրամասն ցույց էր տալիս, թե ինչպե՛ս պետք է կատարել կաշիների տեսակավորումը, ո՛ր կաշին ինչպիսի՛ կոշիկի երեսի համար պետք է օգտագործել, ինչպե՛ս աշխատանքի ժամանակ արագ կողմնորոշվել, թե

ո՛ր «մակետկան» պետք է վերցնել և այլն։ Նա կոնկրետ կերպով ցույց էր տալիս, թե ինչպես պետք է ճիշտ օգտագործել կաշվի ամբողջ մակերեսը՝ մինիմումի հասցնելով անօգտագործելի մնացորդները։

Բայց ագիտատորը միայն դրանով չէր բավարարվում, նա աշխատանքի ժամանակ օգնում էր բանվորներին, որպեսզի նրանք ճշգրիտ կերպով կատարեն Նալչաջյանի ցուցումները։ Եվ ահա այսպիսի հետևողական ու մտածված աշխատանքով ագիտատոր Հովհաննիսյանը հասավ իր առաջադրած նպատակին։ Այժմ հումքը խնայելու գործում Նալչաջյանից հետ չեն մնում ձևողներ Հ. Կոսդաբալյանը, Ա. Բարսեղյանը, Մ. Մամիրջանովան, Ա. Հակոբյանը և ուրիշներ։ Այս տարվա անցած չորս և կես ամսում ձևող ցեխը տնտեսել է 92.725 քառ. դեցիմետր փափուկ կաշի և տեքստիլ երեսացու, որից արտադրվել է 4.436 զույգ կոշիկ։

Ահա մեկ ուրիշ օրինակ։

Նախապատրաստական ցեխի ծալվածքի բրիգադան մինչև փետրվար ամիսը կլեյի գերածախս էր տալիս։ Ուսումնասիրելով դրա պատճառները, ագիտատոր Գ. Ղուկասյանը տեսավ, որ բրիգադայի անդամներից Մ. Կարապետյանը և Լ. Կոստանյանը ոչ միայն գե-



րածախս չեն տալիս, այլև զգալի չափով խնայում են կլեյը։ Ագիտատորը ուսումնասիրեց նրանց աշխատանքի փորձը և պատրաստվում էր այդ մասին զրուցել բրիգադայի մյուս անդամների հետ, երբ նրան օգնության հասավ «Կայծակ» թերթիկը, ուր գետեղված էր հետևյալ կարճ հաղորդագրությունը. «Ծալվածքի տեղամասի ստախանովականներ Մ. Կարապետյանի և Լ. Կոստանյանի խնայած օժանդակ նյութերով բրիգադան կարող է աշխատել չորս օր: Ծալվածքի բաժնի ընկեր բանվորնե՛ր, հետևեցեք այդ առաջավորների օրինակին, խնայողաբար օգտագործեցեք նյութերը»:

Այս լուրը մեծ հետաքրքրություն առաջացրեց բաժանմունքի բանվորների մեջ. նրանց օգնության հասավ ագիտատորը։ Իր զրույցի ժամանակ նա խոսք տվեց ստախանովականներ Կարապետյանին և Կոստանյանին՝ պատմելու իրենց աշխատանքի փորձի մասին։ Իսկ հետո, աշխատանքի ժամանակ սկսեց օգնել բանվորներին՝ առաջավորների օրինակով աշխատելու։ Եթե բանվորներից մեկն ու մեկը որևէ հաջողության էր հասնում, ագիտատոր Ղուկասյանը այդ մասին խոսում էր իր զրույցների ժամանակ, խրախուսում այդպիսիներին։ Ագիտատորի

այս ժրաջան աշխատանքը մեծապես նպաստեց հումքի խնայողության գործին։ Ծալվածքի տեղամասը ապրիլ ամսին 2 օր, իսկ մայիս ամսվա առաջին 20-օրյակում՝ մեկ և կես օր աշխատեց տնտեսված օժանդակ նյութերի հաշվին։

Հումքի խնայողության համար մղվող պայքարում ֆաբրիկայի ագիտատորները լայնորեն օգտագործում են նաև ցուցադրական ագիտացիայի բազմապիսի ձևերը՝ պատի թերթը, խլյիշովկաները, «Կայծակ» թերթիկները, լոզունգները, պլակատները, ցուցադրական տախտակները և այլն։ Ներբանի ցեխի ագիտատոր ընկ. Ա. Աղաբաբովն, օրինակ, պատրաստել է մի հատուկ պլակատ, որի վրա յուրաքանչյուր օր գրում է, թե երեկ ցեխի որ բանվորը ինչքան հումք է տնտեսել։

Հումքը տնտեսելու համար մղվող պայքարը մեր ֆաբրիկայում գնալով ավելի ու ավելի մասսայական ծավալ է ստանում, նոր ձևեր է ընդունում։

Հ. ԱԴԱՄՅԱՆ
(Երևանի Կոշիկի № 1 ֆաբրիկայի ագիտկոլեկտիվի ղեկավար)



---

## ՄՈԼՈՏՈՎԻ ԱՆՎԱՆ ՄԱՆԱՐԱՆ ՖԱԲՐԻԿԱՅԻ „ԿԱՅԾԱԿ" ՁԵՌԱԳԻՐԸ

Բոլշևիկյան մամուլը մեր պարտիայի ամենասուր և ամենաուժեղ զենքն է։ Թերթերն իբրև կոլեկտիվ պրոպագանդիստ, կոլեկտիվ ագիտատոր և կազմակերպիչ, չափազանց խոշոր դեր են կատարում կոմունիստական հասարակարգի կառուցման գործում։ Բոլշևիկյան մամուլը վիթխարի ուժ է հանդիսանում աշխատավորներին մարքսիզմ-լենինիզմի ոգով դաստիարակելու, սոցիալիստական ստեղծարար մրցումը լայնորեն ծավալելու գործում։ Բոլշևիկյան մամուլի անբաժանելի մասն է կազմում ստորին մամուլը՝ ֆաբրիկա-գործարանային, կոլխոզային, հիմնարկային պատի թերթերը և խլյիշովկաները։ Բոլշևիկյան մամուլի օրվա առթիվ այս տարվա մայիսի 5-ին ռեսպուբլիկայի քաղաքներում և գյուղերում կազմակերպված պատի թերթերի ցուցահանդեսները պարզ կերպով վկայեցին, թե ինչպիսի հսկայական դեր են կատարում մեր պատի թերթերն ու խլյիշովկաները։ Շատ թերթեր

հանդես են բերում նախաձեռնություն և ձեռներեցություն սոցիալիստական մրցությունը գլխավորելու, արտադրողականությունը բարձրացնելու, գերազանց որակի համար մղվող պայքարում։ Հրաշալի նախաձեռնություն է հանդես բերել Լենինականի Մայիսյան ապստամբության անվան Տեքստիլ կոմբինատի Մոլոտովի անվան Մանարան ֆաբրիկայի «Ստախանովյան մեթոդով» պատի թերթի խմբկոլը (խմբկոլի նախագահ՝ ընկ. Բ. Գալստյան)։

Ֆաբրիկայի պատի թերթը, որը լույս է տեսնում պարբերաբար և իր բովանդակալից հոդվածներով արժանացել է կոլեկտիվի համակրանքին, վերջերս սկսել է հրատարակել «Կայծակ» թերթիկներ և «Կայծակ» հեռագրեր։

Առանձնապես մեծ նշանակություն ունեն «Կայծակ» հեռագրերը։ Խմբկոլը նկատելով, որ որևէ ցեխ կամ ագրեգատ վատ է աշխատում, կամ իր վատ աշխատանքով խանգարում է մյուս բաժիններին, շտապ հրատարակում է «Կայծակ» հեռագիրը։ Ֆաբրիկայի պատի թերթի մի անկյունում հատուկ տեղ է նվիրված «Կայծակ» հեռագրերին։



Որպեսզի համոզվենք, թե ինչքան կոնկրետ և նպատակասլաց են լինում այդ «Կայծակ» հեռագրերը, բերենք մի քանի օրինակ։

Մայիսի 13-ին «Կայծակ» հեռագրում ասված է.

«Հեռագիր № 001, ժամը 11-ին։

Մոլոտովի անվան Մանարան ֆաբրիկայի գլխավոր մեխանիկ ընկեր Հ. Միրզոյանին։

Պատվերի վարպետ ընկ. Ա. Մուրադյանին։

Նախապատրաստական բաժնի բարակ մանող № 20 մեքենան ահա մեկ ժամ է կանգ է առել ատամնավոր անիվի պակասի պատճառով։ Եթե անհապաղ միջոցներ ձեռք չառնվեն, մենք այսօր 100 կիլոգրամ պակաս նախամանվածք կտանք։

Նախապատրաստական բաժնի պետ Հ. Հովհաննիսյան»։

Այս հեռագրի պատասխանն ստացվել է ուղիղ մեկ ժամ հետո և տպագրվել։ Իրենց պատասխանում ֆաբրիկայի գլխավոր մեխանիկը և պատվերի վարպետը գրել են՝ «№ 001 հեռագրում նշված փաստը ճիշտ է։ Մենք արդեն վերացրել ենք № 20 մեքենայի պարապուրդի պատճառը և միջոցներ ենք մշակում հետագայում նման երևույթ թույլ չտալու համար»։

№ 003 «Կայծակ» հեռագիրը նվիրված էր փաթաթարան ցեխի բանվորներ Զ. Հովհաննիսյանի, Ա. Թումանյանի, Ռ. Պապոյանի տեղամասին, որտեղ լրիվ չէր օգտագործվում ստացված մանվածքը: Յուրաքանչյուր շպուլի վրա թողնում էին 200-300 մետր թել, որն ըստ էության դառնում էր խոտան: «Կայծակ» հեռագրից հետո վերացվեց խոտանը:

«Կայծակ» հեռագրերի կազմմանը մեծ չափով օգնում է ֆաբրիկայի պարտբյուրոն:

Մոլոտովի անվան Մանարան ֆաբրիկայի «Ստախանովյան մեթոդով» պատի թերթի խմբկոլի օրինակով, մեր պատի թերթերը, լավ կլինի, հրատարակեն «Կայծակ» թերթիկներ և «Կայծակ» հեռագրեր: Դրանք խոշոր օգնություն կլինեն տվյալ ձեռնարկության, կոլխոզին, սովխոզին իրենց առջև դրված խնդիրների անթերի կատարումն ապահովելու բնագավառում:





# ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԼԵՆԻՆՅԱՆ ՈՃԸ

Վ. Ի. Լենինը և Ի. Վ. Ստալինը բոլշևիկյան պարտիան ստեղծելու իրենց աշխատանքի առաջին իսկ քայլերից բացառիկ ուշադրություն են նվիրել քաղաքական ագիտացիային, քաղաքականապես կոփված, տեսականորեն պատրաստված և բարձր կուլտուրա ունեցող բոլշևիկյան ագիտատորների կադրեր դաստիարակելու գործին: Լենինի և Ստալինի ասույթները՝ բոլշևիկյան ագիտացիայի բնույթի մասին, աշխատավորների ռևոլյուցիոն գիտակցականության համար պայքարող խիզախ, մարտական, առաջավոր բոլշևիկ ագիտատորի դերի մասին, և նրանց իսկ ագիտացիոն աշխատանքի հիանալի օրինակները յուրաքանչյուր ագիտատորի զինում են աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում աշխատելու կարողությամբ:

*Թեորիայի և պրակտիկայի օրգանական կապը, պարտիականությունը, նպատակասլացությունը, կոնկրետությունը, պարզությունը և ճշմարտացիությունը, մարտական,*

հարձակողական բնույթը՝ ագիտացիայի լենինյան ոճի հիմնական գծերն են։

Բոլշևիկների ագիտացիան միշտ էլ նպատակասլաց է եղել։ Բոլշևիկների պարտիան պայքարի բոլոր էտապներում մասսաներին միշտ էլ մոբիլիզացրել է որոշակի, կոնկրետ խնդիրների շուրջը, որոնք ծառացել են բանվոր դասակարգի առաջ՝ կոմունիզմի համար մղվող պայքարի այս կամ այն ժամանակաշրջանում։ Լենինը 1919 թվականին, որպես մեր ագիտացիայի հաջողության գլխավոր պատճառ մատնանշում էր «մասսաներին բացատրել կարողանալը, թե ինչու անհրաժեշտ է այս կամ այն պահին բոլոր ուժերը կենտրոնացնել սովետական աշխատանքի մե՛րթ այս, մե՛րթ այն կողմի վրա. մասսաների եռանդը, հերոսականությունը, խանդավառությունը բարձրացնել կարողանալը, հերթական կարևորագույն խնդրի վրա կենտրոնացնելով ռևոլյուցիոն-լարված ջանքերը» (Վ. Ի. Լենին. Երկեր, 3-րդ հրատ., հատ. 24, էջ 532)։

Լենինի և Ստալինի գործունեությունը մեզ տալիս է այդպիսի նպատակասլաց, կոնկրետ ագիտացիայի բազմաթիվ հիանալի օրինակներ։ 1894—1895 թվականներին ղեկավարելով Պետերբուրգի բանվորների



խմբակները, Լենինը իր խմբակի մասնակիցների միջոցով ծանոթանում է ֆաբրիկաներում ու գործարաններում տիրող դրությանը։ Նա իր խմբակի մասնակիցներին հատուկ առաջադրանքներ էր տալիս նյութեր հավաքելու համար, նրանց սովորեցնում էր, թե ինչպես պետք է պատրաստվել ինքնուրույն ագիտացիոն աշխատանք տանելու համար, պահանջում էր ուշադրությամբ դիտել և ուսումնասիրել ֆաբրիկա-գործարանային կյանքը։

Այդ նյութերի հիման վրա, որոնք հավաքել էին իրենք՝ բանվորները, գրվում էին ագիտացիոն թերթիկներ։ Եվ դրանք աչքի էին ընկնում իրենց շոշափած հարցերի հրատապությամբ ու կոնկրետությամբ։ Ագիտացիոն թերթիկները մերկացնում էին գործարանային կարգերը, և, դրա հետ մեկտեղ, ցույց էին տալիս մասնավոր, կոնկրետ երևույթների, օրինակ տուգանքների, կապը այն ժամանակները Ռուսաստանում տիրող ճնշման ու շահագործման ամբողջ սիստեմի հետ։

Ագիտացիոն աշխատանքի նույն մեթոդները և նրա մեծագույն գործունակությունը մենք տեսնում ենք, ծանոթանալով ընկեր Ստալինի Կովկասում ծավալած ռևոլյուցիոն գործունեության առաջին իսկ քայլերին։

Իր բանավոր ելույթները, բանվորների և գյուղացիների համար գրած ագիտացիոն թերթիկները, հոդվածները, բրոշյուրները ընկեր Ստալինը նույնպես, ինչպես Լենինը, շարունակ կառուցում էր կոնկրետ օրինակների հիման վրա, կյանքից վերցրած այդ փաստերն ու օրինակները պարզաբանելով ռևոլյուցիոն թեորիայի լույսի տակ։ Ընկեր Ստալինի ագիտացիոն աշխատանքը միշտ օրինակ է հանդիսացել ագիտացիային ներկայացվող լենինյան հիմնական պահանջի կատարման համար՝ «օրվա յուրաքանչյուր հուզող հարցի համար մղվող յուրաքանչյուր պայքարը **անխզելիորեն պետք է կապվի** հիմնական նպատակների հետ» (Վ. Ի. Լենին. Երկեր, ռուս. 4-րդ հրատ., հատ. 19, էջ 25)։

***

Բոլշևիկյան ագիտացիայի ուժը նրա ճշմարտության մեջ է։ 1920 թվականի հունվարին հանդես գալով բանվորների և կարմիրբանակայինների անպարտիական կոնֆերենցիայում, Վ. Ի. Լենինը այդ առթիվ ասել է.

«Իրենց բոլոր թերթիկներում սպիտակգվարդիականները գրում են, որ բոլշևիկները հիանալի ագիտացիա ունեն, որ նրանք ա-



գիտացիայի համար փող չեն խնայում։ Բայց չէ՞ որ ժողովուրդը լսել է ամեն տեսակի ագիտացիա՝ և՛ սպիտակգվարդիականների և՛ սահմանադիր ժողովի։ Ծիծաղելի կլիներ կարծել, որ նա բոլշևիկների հետևից գնաց նրա համար, որովհետև նրանց ագիտացիան ավելի ճարտար էր։ Ոչ, բանն այն է, որ նրանց ագիտացիան ճշմարտացի էր» (Վ. Ի. Լենին. Երկեր, ռուս. 3-րդ հրատ., հատ. 25, էջ 14)։ Մեր ագիտացիայի զարգացման «հրաշքները», որոնց մասին խոսում էին մեր հակառակորդները, բացատրվում են ոչ նրանով, որ մենք շատ ագիտատորներ ունեինք և շատ թուղթ ենք ծախսել. դա պետք է հասկանալ այսպես, որ «այն ճշմարտությունը, որ կար այդ ագիտացիայում, մտնում էր բոլորի գլուխները» (Նույն տեղում, էջ 105)։

Մեր ագիտացիայի ճշմարտությունը՝ դա մարքսիստական-լենինյան գիտության ռևոլյուցիոն ճշմարտությունն է, որը միակ ճիշտ բացատրություններ է տալիս հասարակական կյանքի բոլոր երևույթներին, մասսաներին զինում է հասարակության զարգացման օրենքների իմացությամբ, թշնամիների դեմ պայքարելու և նրանց հաղթելու կարողությամբ։

Բոլշևիկների պարտիայի 1917 թվականի Ապրիլյան կոնֆերենցիայի մասին Լենինի զեկուցման պլանում կա այսպիսի մի դարձվածք՝ «Մարքսիզմի առավելագույնը=հանրամատչելիության և պարզության առավելագույնին» (Վ. Ի. Լենին. Երկեր, ռուս. 3-րդ հրատ., հատ. 30-րդ, էջ 331)։

Այդ երկու պահանջները Լենինի համար անխզելի էին, առանց դրանց միակցման նա ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանք չէր պատկերացնում։ Բովանդակության խորությունն ու մատչելիությունը, հասարակական կյանքի ամենաբարդ հարցերի պարզ շարադրումը՝ բոլշևիկյան ամբողջ ագիտացիայի հիմքն են կազմում։ Ռևոլյուցիոն ուսմունքի խոր իմաստն ամենալայն մասսաների համար հասկանալի ձևով արտահայտելու այդ կարողությունը, աշխատավորներին «մարքսիզմի առավելագույնը» տալու կարողությունը մենք մշտապես պետք է սովորենք բոլշևիկյան ագիտացիայի մեծ վարպետներից՝ Լենինից ու Ստալինից։ «...Անհրաժեշտ է,— գրել է Լենինը,— թեորիայով պարզաբանել յուրաքանչյուր մասնավոր փաստ»։ «Կոմունիզմը պետք է մատչելի դառնա բանվորական մասսաների համար, որպես իր սեփական գործը» (Վ. Ի.



Լենին. Երկեր, ռուս. 3-րդ հ., հատ. 25-րդ էջ 455)։ Այս խնդիրները աներևակայելի են՝ առանց ագիտատորի անդուլ աշխատանքի՝ իր մտահորիզոնը ընդլայնելու, մարքսիստական-լենինյան թեորիային տիրապետելու համար։ Միայն այս պայմանով է, որ ագիտատորը կկարողանա ճիշտ ըմբռնել պարտիայի քաղաքական գիծը և պարզ ու հասկանալի ձևով այն հասցնել աշխատավորների գիտակցությանը։

Ագիտատորի այդ մի կարևորագույն խնդրի մասին շարունակ հիշեցնում է և ընկեր Ստալինը։ «... Պետք է բացատրել պարտիաի ու Սովետական իշխանության ցուցումները, բացատրել համբերատարությամբ և ուշադիր կերպով, որպեսզի մարդիկ հասկանան՝ ինչ է ուզում պարտիան և ուր է տանում նա երկիրը։ Այսօր չհասկացան— նեղություն կրեք վաղը բացատրելու։ Վաղը չհասկացան— նեղություն կրեք մյուս օրը բացատրելու»։ (Ի. Ստալին. Երկեր, հ. 9-րդ, էջ 180)։

Պետք է կարողանալ «... մասսաներին բարձրացնել մինչև պարտիայի գիտակցության մակարդակը և ապահովել, այսպիսով, մասսաների աջակցությունը, նրանց պատրաստակամությունը վճռական պայ-

*քարի համար» (Ի. Ստալին. Երկեր, հայ. հրատ., հատ. 8-րդ, էջ 60)։*

*Այդ խնդիրները կատարել կարողանալու համար, յուրաքանչյուր ագիտատոր պետք է սովորի «պարզ ու հասարակ, մասսաներին հասկանալի լեզվով, վճռաբար դեն նետելով անհասկանալի տերմինների, օտար բառերի, սովորած, պատրաստի, բայց մասսաների համար դեռևս անհասկանալի, նրանց անծանոթ լոզունգների, բնորոշումների, եզրակացությունների ծանր հրետանին...» (Վ. Ի. Լենին. Երկեր, հայ. հրատ., հատ. 11-րդ, էջ 361)։*

*Թե ինչ նկատի ուներ Լենինը, երբ գրում էր «առավելագույն չափով հանրամատչելի ու հասարակ» լինելու մասին, պարզ երևում է «Սվոբոդա» ժուռնալի (1901 թ.) վերաբերյալ նրա ռեցենզիայից։ Այդ ռեցենզիայում Լենինի տված ցուցումները հավասարազոր նշանակություն ունեն թե տպագիր և թե բանավոր պրոպագանդայի ու ագիտացիայի մեթոդները որոշելու համար։*

*«Հանրամատչելիությունը... շատ հեռու է գռեհկացումից, հանրամատչելիություն անելուց։ Հանրամատչելի գրողը ընթերցողին մոտեցնում է խոր մտքի, խոր ուսմունքի, ելնելով ամենապարզ ու հանրածանոթ*



*տվյալներից, ոչ-բարդ դատողությունների կամ հաջող ընտրված օրինակների միջոցով նշելով այդ տվյալների գլխավոր* եզրակացությունները, *մտածող ընթերցողին մղելով դեպի հետագա նոր հարցեր։ Հանրամատչելի գրողը չի ենթադրում չմտածող, մտածել չցանկացող կամ չկարողացող ընթերցող, ընդհակառակը, չզարգացած ընթերցողի մեջ նա լուրջ մտադրություն է ենթադրում գլխով աշխատելու և* օգնում է *նրան կատարելու այդ լուրջ ու դժվարին աշխատանքը, առաջ է տանում նրան, օգնելով կատարելու առաջին քայլերը և* ուսուցանելով *նրան ինքնուրույն կերպով առաջ գնալ...» (Վ. Ի. Լենին. Երկեր, հայ. հրատ., 4-րդ հատ., էջ 412—413)։*

***

*Բոլշևիկյան ագիտացիայի մարտական, հարձակողական բնույթը, նրա սրությունն ու նպատակասլացությունը հիմնված են Լենինի-Ստալինի պարտիայի քաղաքականության խոր սկզբունքայնության վրա։*

*Պրոլետարիատի մեծ առաջնորդները աշխատավորներին միշտ դաստիարակել են անհաշտության ոգով՝ ցարիզմի, բուրժուազիայի և հանձին օպորտունիստական պար-*

տիաների՝ նրանց գործակալության նկատմամբ ամենափոքր համաձայնություն թույլ տալու գործում։ Նրանք սովորեցրել են մարդկանց մասին և քաղաքական պարտիաների մասին դատել ոչ թե նրանց խոսքերով, այլ գործերով։

Այդ ցուցումները կարևոր են նաև այժմ, միջազգային այն բացառիկ բարդ իրադրության պայմաններում, որ կա այժմ և որի պայմաններում ապրում և պայքարում են կոմունիզմի համար սովետական մարդիկ, հասկանալի է նրանց հսկայական հետաքրքրությունն այն բանի նկատմամբ, ինչ տեղի է ունենում կապիտալիստական երկրներում։ Մերկացնելով համաշխարհային նոր պատերազմի հրձիգներին, կոնկրետ օրինակներով ցույց տալով ամերիկյան իմպերիալիզմի ուղղակի գործակալությունը դարձած կապիտալիստական երկրների աջ «սոցիալիստական» պարտիաների նողկալի դավաճանական դերը, ինչպիսի «ձախ» ֆրազներով էլ նրանք քողարկելու լինեն իրենց թշնամական գործունեությունը, ագիտատորը կատարում է Լենինի մի կարևորագույն պատգամը՝ օգնել աշխատավորներին «սովորել քաղաքականություն, այսինքն՝ մերկացնել խաբեությունը և հասնել ճշմարտության»



(Վ. Ի. Լենին. Երկեր, ռուս. 4-րդ հրատ., հատ. 18, էջ 29)։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակից հետո ագիտացիայի հիմնական հարցը, կենտրոնական խնդիրը դարձել է աշխատանքային գիտակից կարգապահության դաստիարակումը, պայքարը աշխատանքի արտադրողականության բարձրացման համար։ Առաջին պլանի վրա քաշվեցին դրական փորձի պրոպագանդան, աշխատավորների դաստիարակումը՝ սովետական ամենից ավելի առաջավոր, լավագույն մարդկանց հերոսական, անձնազոհ աշխատանքի օրինակներով։

Լենինը իր «Մեծ նախաձեռնություն» բրոշյուրում (1919 թ.) շարունակ հիշեցնում է ագիտատորների աշխատանքի լավագույն օրինակների ցուցադրումը, օրինակի ուժը, պրոպագանդում է «Կոմունիստական շաբաթօրյակները» որպես «թիկունքում բանվորների կատարած հերոսության» բարձր օրինակ, որպես նոր, կոմունիստական հասարակարգի ծիլեր, որպես կոմունիստական վերաբերմունքի օրինակ՝ դեպի աշխատանքը, որպես աշխատանքի նոր, հասարակական գիտակից կարգապահության օրինակ։ Յուրաքանչյուր ագիտատոր Լենինի

այդ բրոշյուրում շատ արժեքավոր ցուցումներ կգտնի, թե ինչպես պետք է կազմակերպել ագիտացիան, ելնելով հանրահայտ, ռեալ փաստերից, ընտրելով և պրոպագանդելով բոլոր այն նորը, աճողը, որը տանում է առաջ՝ դեպի կոմունիզմի հաղթանակը։

«...Ավելի շատ ուշադրություն կոմունիստական շինարարության ամենահասարակ, բայց կենդանի, կյանքից վերցրած, կյանքի կողմից ստուգված փաստերին— այս լոզունգը անհրաժեշտ է, որ անդուլ կերպով կրկնենք մենք բոլորս՝ մեր գրողները, ագիտատորները, պրոպագանդիստները, կազմակերպիչները և այլն» (Վ. Ի. Լենին. Երկեր, ռուս. 3-րդ հրատ., հատ. 24, էջ 335)։

Նորի ծիլերի այդ ակտիվ պաշտպանության ու պրոպագանդային, կոմունիզմի աճմանը խանգարող բոլոր հնի դեմ մղվող պայքարին բացառիկ նշանակություն էր տալիս Լենինը։ Դրական փորձի պրոպագանդայի, հերոսական, անձնազոհ ափրագործության օրինակների հիման վրա աշխատավորներին դաստիարակելու հետ միասին, ագիտատորները պետք է մերկացնեն այն ամենը ինչ անպետք է, թշնամական է մեր հասարակարգի համար, ինչ արգելակում է



մեր առաջընթացին՝ դեպի կոմունիզմի հաղթանակը։

Բոլշևիկյան ագիտացիան պետք է ուղղված լինի պայքարելու մարդկանց գիտակցության մեջ եղած կապիտալիզմի մնացուկների դեմ, պայքարելու հին հասարակարգից ժառանգություն մնացած հին սովորություններն ու ընտելությունների, հին տրադիցիաների ու նախապաշարմունքների դեմ, որոնց մասին խոսել է ընկեր Ստալինը, որպես սոցիալիզմի ամենավտանգավոր թշնամիների։ Սոցիալիզմի այդ թշնամիների դեմ աշխատավորների ատելությունը բորբոքելը, նրանց զգոնությունն ամեն կերպ բարձրացնելը՝ մասսաների ակտիվության բարձրացման հիմնական պայմաններից մեկն է։

Բարձր է ու պատվավոր ագիտատորների դերը աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում։ Բոլշևիկյան ագիտատորը բարձրացնում է սովետական մարդկանց ստեղծագործական ակտիվությունը, օգնում է նրանց ավելի լավ ըմբռնել անձնական աշխատանքի կապը մեր երկրում կոմունիզմի կառուցման մեծ խնդրի հետ, դաստիարակում է նրանց սովետական կենարար հայրենասիրության ոգով։ Յուրաքանչյուր ագիտատոր, դրա հետ միասին,

ակտիվ մարտնչող պետք է լինի ինչպես արտադրության մեջ, նույնպես և աշխատավորների կենցաղային սպասարկման գործում եղած բոլոր թերությունների վերացման համար, պետք է մոբիլիզացնի մասսաներին այդ թերությունները վերացնելու, չարիքի կոնկրետ կրողներին մերկացնելու համար։ «Ագիտացիա անել,— ասում է ընկեր Ստալինը,— չի նշանակում միայն համոզել, այլև մերկացնել»։

Ուսումնասիրելով և օգտագործելով բոլշևիկյան ագիտացիայի՝ պարտիայի կուտակած հսկայական փորձը, Լենինից և Ստալինից սովորելով մարտական, հարձակողական, սուր ու ճշմարտացի ագիտացիայի նրանց մեծ արվեստը, մենք մեր մեջ դաստիարակում ենք լենինյան տիպի ագիտատորների, բոլշևիկ-ագիտատորների հատկություններ։

Մ. ԳԼՅԱՍՍԵՐ

(«Блокнот агитатора», № 10, 1950 г.)



ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ԶՐՈՒՑՑԻ ԺԱՄԱՆԱԿ

# Ի՞ՆՉ Է ԿԱՌՈՒՑՎԵԼՈՒ ԱՅՍ ՏԱՐԻ ԵՐԵՎԱՆՈՒՄ

Սովետական իշխանության 30 տարիների ընթացքում անճանաչելիորեն փոխվել է մեր ռեսպուբլիկայի մայրաքաղաք Երևանը։ Կավաշեն տներով, ծուռումուռ, փոշեծածկ փողոցներով, մանր-արհեստավորական փոքրիկ քաղաքից այն աճել, դարձել է արդյունաբերական խոշոր, սոցիալիստական քաղաք՝ իր բազմաթիվ գործարաններով ու ֆաբրիկաներով, քարաշեն, բազմահարկ, գեղեցիկ տներով, ուղղաձիգ, ասֆալտապատ պողոտաներով ու փողոցներով, ստվերախիտ պարկերով, տրանսպորտի ու կապի ժամանակակից միջոցներով։

Քաղաքի վերակառուցման գծով խոշոր աշխատանքներ կատարվեցին հետպատերազմյան նոր հնգամյակի անցած չորս տարիների ընթացքում։ Միայն 1949 թվականի ընթացքում Քաղաքային Սովետի Գործկոմի գծով կառուցվեց 12 բազմահարկ բնակելի շենք, շահագործման հանձնվեց 11 հազար

քառակուսի մետր բնակելի տարածություն։ Գերատեսչությունների գծով շահագործման հանձնվեց ավելի քան 15 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն։ Դրանից բացի, քաղաքի զանազան ռայոններում կառուցվեց 1651 անհատական բնակելի տուն։ Անցյալ տարվա ընթացքում շահագործման հանձնվեց նաև 6 դպրոցական շենք, 4 մանկապարտեզ, 4 ակումբ-կինո, 4 բաղնիք-ցնցուղ, 3 բուժարան և այլն։

Մեծ աշխատանքներ կատարվեցին քաղաքի փողոցների ընդարձակման ու բարեկարգման, բակերի շինարարության ու կանաչապատման ուղղությամբ։

Անցյալ տարի քաղաքը հարստացավ տրանսպորտի նոր միջոցով՝ շահագործման հանձնվեց տրոլեյբուսը, որի գծերի ընդհանուր երկարությունը մոտ 24 կիլոմետր է։

Մայրաքաղաքի շինարարության ավելի մեծ ծրագիր է նախատեսված 1950 թվականի համար։ Այս տարվա համար նախատեսված կապիտալ ներդրումները զգալի չափով գերազանցում են 1949 թվականին ծախսված գումարներից։

Այս տարի բարեկարգման խոշոր աշխատանքներ պետք է կատարվեն Լենինի հրա-



պարակի բարեկարգման գծով։ Մինչև Հայաստանում սովետական կարգերի հաստատման 30-րդ տարեդարձը պետք է ավարտվեն Կուլտուրայի տան՝ դեպի հրապարակը նայող թևի վերակառուցման քարային աշխատանքները։ Կուլտուրայի տան այդ մասի երեսպատումը կատարվում է բացկապտավուն քարից և իր տեսքով ընդհանուր ներդաշնակություն է կազմելու Լենինի հրապարակը շրջապատող Կառավարական տան, «Արարատ» տրեստի և Արդյունաբերական կոոպերացիայի վարչության շենքերի հետ։ Հրապարակի կենտրոնում կառուցվելու է ջրային մեծ ավազան, որը հղկած գրանիտից պատրաստված իր պատերով հրապարակի զարդերից մեկը կլինի։

Լայնացվելու և հիմնովին վերակառուցվելու է Ամիրյանի փողոցի՝ Լենինի հրապարակի և Ստալինի պողոտայի միջև ընկած մասը։ Այդ հնարավորություն կտա այսուհետև զորահանդեսների ու ցույցերի ժամանակ օգտագործել Լենինի արձանի տրիբունան։ Շարասյուների շարժումը կկատարվի Ստալինի պողոտայի կողմից, Ամիրյանի փողոցով, հրապարակով, Լենինի արձանի մոտով դեպի Միկոյանի պողոտան։

Քաղաքի հյուսիսային բարձրավանդակում,

դեպի Քանաքեռ տանող խճուղու վրա, հիմնադրվում է Ստալինի անվան Կուլտուրայի և հանգստի պարկը՝ 50 հեկտար տարածությամբ։ Այդ կլինի քաղաքի լավագույն զովաշունչ պարկերից մեկը։ Արագ թափով առաջ է տարվում այդ պարկում կառուցվող Հաղթանակի մոնումենտի շինարարությունը։ Այդ հոյակապ կառուցվածքը բաղկացած է լինելու երկու մասից՝ տուֆաշեն պատվանդանից և ընկեր Ստալինի արձանից։ Ընկեր Ստալինի արձանը, որը պատրաստել է Ստալինյան մրցանակի լաուրեատ, քանդակագործ Ս. Դ. Մերկուրովը, ձուլված է պղնձից և ունի 16 մետր բարձրություն։ Մոնումենտն ունենալու է 50 մետր բարձրություն։

Աբովյանի փողոցի վերջում, Քանաքեռի խճուղու սկզբին կդրվի հայ մեծ լուսավորիչ Խաչատուր Աբովյանի արձանը։ Կիրովի անվան պարկում, դեպի Շահումյանի փողոցի կողմը, այգու գլխավոր ծառուղում կդրվի Սովետական Միության կրկնակի Հերոս Նելսոն Ստեփանյանի կիսանդրին։

Այս տարի ավարտվելու է Ստալինի պողոտայի՝ դեպի Հաղթանակի կամուրջը տանող մասի շինարարությունը։ Պողոտայի այդ նոր բացվող մասի վրա այժմ կառուց-



վում են չորսից-վեց հարկանի 7 բնակելի շենքեր՝ հարմար բնակարաններով, խանութներով, մանկապարտեզներով և մանկամսուրներով։ Շենքերից երկուսն ունենալու են լիֆտ։ Մինչև Հայաստանում սովետական կարգերի հաստատման 30-րդ տարեդարձը, Երևանի Քաղաքային Սովետի Գործկոմը աշխատավորության օգտագործմանը կհանձնի 11.140 քառակուսի մետր բնակելի տարածություն։ Բացի դրանից, մինիստրությունները և քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունները այս տարի կկառուցեն մոտ 30 խոշոր բնակելի շենքեր։

Քաղաքի տարբեր ռայոններում՝ Ամիրյանի և Բաղրամյանի փողոցների վրա, Մոլոտովյան ռայոնում, Կիրովի անվան գործարանի բանվորական ավանում և Նոր Արեշ ավանում կառուցվում են և մինչև նոր ուսումնական տարվա սկիզբը շահագործման կհանձնվեն դպրոցական 5 շենքեր։

Մեծ ծավալի աշխատանքներ են կատարվելու քաղաքի փողոցների ծառատնկման, կանաչապատման և ծաղկազարդման գծով։ Ծառատնկումներ են ձեռնարկված Ծիծեռնակաբերդի լանջերին։ Ընթացիկ տարում կտնկվի 10 միլիոն ծաղկասածիլ։ Այս տարի հիմնականում կավարտվի Կենդանաբանա-

կան այգու գլխավոր օբեկտների շինարա-
բությունը։ Կավարտվի Ստալինյան ռայոնի,
Օրջոնիկիձեի պողոտայի վրա կառուցվող Ու-
նիվերմագ շենքի շինարարությունը։ Նախա-
ձեռնված է կինո-թատրոնի շինարարությունը
Օրջոնիկիձեի հրապարակում։ Շահագործ-
ման է հանձնվելու Ստալինի պողոտայի
վրա կառուցվող փակ շուկան։
Ասֆալտապատվելու է 150 հազար քա-
ռակուսի մետր փողոց և հրապարակ։ Սկըս-
վում է առափնյա ճանապարհի շինարարու-
թյունը Զանգու գետի երկարությամբ՝
Երևանի հիդրոկայանի և Հաղթանակի կա-
մուրջի միջև, գետի աջ ափին։ Սկսվում է
Գետառի առափնյա փողոցի շինարարու-
թյունը՝ Նորքի կամուրջի և Այգեստան փո-
ղոցի միջև, ափերն ամրապնդելու հենա-
պատերով։
Սովետական Հայաստանի երեսնամյակի
պատվին մայրաքաղաքի շինարարության
կոլեկտիվներում ծավալված սոցիալիստա-
կան մրցությունը, կառուցողների աշխատան-
քային բարձր խանդավառությունը երաշխիք
են այն բանի, որ Երևանի 1950 թվականի
շինարարական պլանները կկատարվեն
ժամկետին և բարձր որակով։

Գ. ԲԱԲԱՅԱՆ

(Երքաղսովետի Գործկոմի
նախագահի տեղակալ)



# ԴԱ ՀԵՆՑ ԻՆՔԸ՝ ԿԱՊԻՏԱԼԻԶՄՆ Է

Նույնիսկ պաշտոնական, բացահայտորեն նվազեցված, ամերիկյան տվյալներով ներկայումս ԱՄՆ-ի բնակչության ավելի քան երեք քառորդը զուրկ է ապրուստի նվազագույն միջոցներից և կրում է անհլանելի զրկանքներ։

Տասնյակ միլիոնավոր ամերիկացիներ գործազուրկ են և նրանց ընտանիքների անդամները տառապում են քաղցից։

Այն բանի հետևանքով, որ հանքատերերը ժլատ են անվտանգության տեխնիկայի համար պահանջվող խիստ անհրաժեշտ, իրենց չափով չնչին ծախսեր կատարելու մեջ, պատերազմի տարիներին ԱՄՆ-ի հանքահորերում զոհվել և խեղդվել է 320 հազար հանքափոր, որը շատ ավելի է, քան համաշխարհային ամբողջ երկրորդ պատերազմի ընթացքում ամերիկյան զորքերի կրած զոհերը՝ սպանվածներով ու վիրավորներով։ Մինչդեռ, նույն այդ հանքատերերը, մյուս կապիտալիստների հետ միասին, հանգիստ խղճով միլիոնավոր դոլարներ են շպրտում իրենց շներին խնամելու, իրենց սատկած շների հիշատակը հավերժացնելու համար։

Գրող Յու. Ֆրիդբախը, Օտարերկրյա գրականության

հրատարակչության կողմից վերջերս լույս ընծայված իր «Ֆորտ Նոկսի սովերում» գրքում պատմում է, որ Ամերիկայի համարյա յուրաքանչյուր խոշոր քաղաքում կան շների, կատուների, կապիկների և թութակների գերեզմաններ։ Հոլիվուդում կենդանիների գերեզմանատանը սատկած կենդանիները թաղվում են մետաքսյա թանկագին պատանքների մեջ առնվելուց և շատ շքեղ դագաղների մեջ դրվելուց հետո։

Նյու-Յորքին մոտիկ գտնվող Գարտդել արվարձանի շների գերեզմանատանը ամերիկյան երկաթուղային մագնատ Վանդերբիլտը մի ամբողջ տաճար է պատրաստել՝ ի պատիվ իր սատկած 3 շների, իսկ միլիոնատեր կին Աստորը մի հսկայական հուշարձան է կանգնեցրել՝ «Իմ շների— իմ հավատարիմ ու անբաժան ուղեկիցների թանկագին հիշատակին»։

Այստեղ գերեզմանների վրա են բարձրացել մարմարե ու բրոնզե թանկարժեք արձաններ, զարդարված այնպիսի «արտահայտիչ» փորագրություններով՝ «Այստեղ է հանգչում Ամին, մեր ընտանիքի սիրելի անդամը», «Գրեմպի, քո սերը, հավատարմությունը և խելքը հարստացնում էին մեր կյանքը։ Սպասիր մեզ» և այլն։ Բոլոր շների հուշարձանները պատրաստվել են ամենահայտնի քանդակագործների ձեռքով և ահռելի գին ունեն։ Որոշ հուշարձաններ ավելի քան 80.000 դոլար են նստել։ Դա մի գումար է, որ գերազանցում է ամերիկյան միջին ընտանիքի քսան տարվա վաստակը։



Մի ուրիշ՝ «Պատմվածքներ Ամերիկայի մասին» գրքում, որը նույնպես լույս է ընծայել Օտարերկրյա գրականության հրատարակչությունը, կա մի պատմվածք բանվոր Խարպերի մասին, այն բանվորի, որը դիտավորյալ կերպով մատները սղոցի տակ է դրել ու կտրել, որպեսզի ապահովավճար ստանա և դրանով իսկ հնարավորություն ունենա իր հիվանդ կնոջ համար բժիշկ հրավիրելու։ Եվ դա իրողություն է։ Այսպիսին է «ամերիկյան ապրելակերպի» դառը ճշմարտությունը։

Նույնիսկ պրեզիդենտ Տրումենի վկայությամբ՝ Միացյալ Նահանգներում «Միլիոնավոր քաղաքացիներ զուրկ են բժշկական սպասարկումից, որովհետև նրանք չեն կարող վճար տալ սիստեմատիկ և բավարար բուժման համար»։ Կապիտալիստական ճարուստ Ամերիկային անծանոթ է ձրի բժշկական օգնությունը։ Ամերիկյան քաղաքացիները բուժման համար անասելի բարձր գին պետք է վճարեն, գին, որ սահմանում են կապիտալիստները։ Մի փոքր հիվանդություն՝ և դա կատաստրոֆ է ամերիկյան շարքային բանվորի ու ծառայողի համար։

Ամերիկյան «Ատլանտիկ Մանսլի» ժուռնալի տվյալներով ամենաաննշան վիրահատության գինը Միացյալ Նահանգներում տատանվում է 150-ից մինչև 500 դոլարի միջև՝ նայած այն հարմարություններին, որոնցից օգտվում է հիվանդը։ Բուժման արժեքը, նույնիսկ այն փոքրաթիվ էժանագին հիվանդանոց-

ներում, որ ստեղծել են բարեգործական ընկերությունները, հավասար է շաբաթական 50—200 դոլարի։ Եվ այդ այն ժամանակ, երբ միջին աշխատավարձը ամսական 120 դոլար է։ Պե՞տք է արդյոք զարմանալ, որ բուրժուական Ամերիկան չտեսնված ռեկորդներ է սահմանել՝ իր հիվանդների թվով։

Ամերիկյան հայտնի պետական պաշտոնյա Օսկար Յուինգի զեկուցման մեջ բերված տվյալները ցույց են տալիս, որ ԱՄՆ-ի ավելի քան 25 միլիոն քաղաքացիներ— երկրի բնակչության ավելի քան մեկ վեցերորդ մասը— տառապում են այս կամ այն խրոնիկական հիվանդությամբ, միայն բուժսպասարկման բացակայության հետևանքով Միացյալ Նահանգներում, պաշտոնական տվյալների համաձայն, ամեն տարի մեռնում է 325 հազար հիվանդ ու հաշմանդամ, հիվանդության կամ դժբախտ պատահարների հետևանքով 250 հազար մարդ դառնում է անաշխատունակ հաշմանդամ։

Եվ այս բոլորը, հասկանալի է, ոչինչով չի հուզում Միացյալ Նահանգների կառավարող շրջաններին։ Կապիտալիստների և նրանց մանկլավիկների աչքում աշխատավորների կյանքը նույնիսկ մի կոտրած գրոշ չարժե։





# ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## I

## ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ՀԱՄԱՐ ՄՂՎՈՂ ՊԱՅՔԱՐԸ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԵՎ ՏՐԱՆՍՊՈՐՏԻ ԱՇԽԱՏՈՂՆԵՐԻ ԿԱՐԵՎՈՐԱԳՈՒՅՆ ԽՆԴԻՐՆ Է

1. Սոցիալիստական հասարակարգի անսահմանափակ հնարավորությունները ՍՍՌՄ-ում աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում։

2. Նոր տեխնիկայի աճը, արտադրության մեքենայացումը և ավտոմատացումը, նոր տեխնոլոգիայի ներդնումը աշխատանքի արտադրողականության հետագա անշեղ բարձրացման հիմքն է։

3. Տեխնիկայի յուրացումը և լրիվ օգտագործումը, ստախանովականների աշխատանքի փորձի լայն ներդնումը, բարձր արտադրողականության գործիքների գործադրումը աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրանքի թողարկման ավելացման, նրա որակի լավացման և ինքնարժեքի իջեցման կարևորագույն ռեզերվներն են։

4. Բոլոր բանվորների կողմից միջին պրոգրեսիվ

նորմաների կատարումը, ձեռնարկության ռիթմիկ աշխատանքը, լավագույն ստախանովականների հաջողությունների հիման վրա աշխատանքի արտադրողականության պլանի մշակումը ստախանովյան տեղամասերի, ցեխերի, ձեռնարկությունների ստեղծման անհրաժեշտ պայմաններն են։

5. Բոլշևիկյան քննադատությունը և ինքնաքննադատությունը աշխատավորների ստեղծագործական նախաձեռնության զարգացման հիմքն է՝ ՍՍՌՄ-ում կոմունիստական հասարակության կառուցման տեմպերի բարձրացման համար մղվող պայքարում։

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Մեծ նախաձեռնություն: Ընտիր երկեր 2 հատորում: *Հատ. 2-րդ, էջ 505: Հայպետհրատ, 1948 թ.:*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Ճառ՝ արտասանած ստախանովականների Համամիութենական առաջին խորհրդակցությանը: *«Լենինիզմի հարցերը», 11-րդ հրատ., էջ 602—617, Հայ. հրատ.:*

Ա. Ի. ՄԻԿՈՅԱՆ.— Ճառ՝ արտասանած Երևանի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում, գլուխ 6-րդ: *«Ս. Հ.», 11 մարտի 1950 թ.:*

Решающее условие повышения производительности труда. «Правда», 17 апреля 1950 г., передовая.



### *II*

## ՍԻՍՏԵՄԱՏԻԿԱԲԱՐ ՊՐՈՊԱԳԱՆԴԱ ԱՆԵԼ ԵՎ ԼԱՅՆՈՐԵՆ ՆԵՐԴՆԵԼ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՆՈՐԱՐԱՐՆԵՐԻ ՓՈՐՁԸ

*1. Արտադրության նորարարները մեր դարաշրջանի առաջավոր մարդիկն են, կոմունիստական հասարակության կառուցման համար մարտնչող ակտիվ մարտիկներ։*

*2. Արտադրության նորարարների փորձի մասսայական ներդնումը տնտեսական շինարարության տեմպերի բարձրացման համար մղվող պայքարի կարևորագույն միջոցն է։*

*3. Բանվորների, ինժեներա-տեխնիկական աշխատողների, ծառայողների որակավորման անընդհատ բարձրացումը, աշխատանքի կուլտուրայի բարձրացումը արտադրության նորարարների փորձի հաջող ներդրման անհրաժեշտ նախապայմանն է։*

*4. Արդյունաբերության առաջավոր մարդկանց (Լիդիա Կորաբելնիկովայի, Ֆեոդոր Կուզնեցովի և ուրիշների) հայրենասիրական նախաձեռնության լայն մասսայականացումը աշխատանքի արտադրողականության նոր բարձրացման, սարքավորման լավագույն օգտագործման և հումքի խնայողության հաշվին արտադրանքի արտապլանային թողարկման պայմանն է։*

*5. Ինչպես է մեր ձեռնարկությունում պրոպագան-*

դա արվում և ներդրվում արտադրության նորարարների փորձը։

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Ճառ՝ արտասանած ստախանովականների Համամիութենական առաջին խորհրդակցությանը։ *«Լենինիզմի հարցերը», 11-րդ հրատ., էջ 602—617, Հայ. հրատ.։*

**Пропагандировать и внедрять опыт новаторов производства.** «Правда», 29 марта 1950 г., передовая.

**Патриотический почин Лидии Корабельниковой и Фёдора Кузнецова.** «Труд», 29 марта 1950 г., передовая.



*III*

## ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԿՈՂՄՆԱԿԻՑՆԵՐԻ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ԿՈՆԳՐԵՍԻ ՄՇՏԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ 3-ՐԴ ՍԵՍԻԱՅԻ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԸ

*1. Մշտական կոմիտեի 3-րդ սեսիայի որոշումները խաղաղության պաշտպանության համար համաշխարհային շարժման ծավալման նոր էտապն է։*

*2. Մշտական կոմիտեի՝ սպառազինության մրցավազքի կրճատման և ատոմային զենքի արգելման վերաբերյալ առաջարկության քննարկումից ԱՄՆ-ի, Անգլիայի և նրանց արբանյակների հրաժարվելը նոր պատերազմի հրձիգների ագրեսիվության աճման ապացույցն է։*

*3. Ժողովրդական բազմամիլիոն մասսաների ստորագրությունները, որոնք բոլոր երկրներում դրվում են Մշտական կոմիտեի կոչի տակ, պատերազմի հրձիգների դեմ հասարակական կարծիքի մոբիլիզացման կարևոր միջոց է, պայքարի մեջ խաղաղության նոր, ակտիվ կողմնակիցների ներգրավման կարևոր միջոց։*

*4. Խաղաղության կողմնակիցների ճակատի միասնությունը և կազմակերպվածությունը, ակտիվ գործողությունները սպառազինումների մրցավազքի դեմ՝ կայուն և երկարատև խաղաղության համար մղվող պայքարի անհրաժեշտ պայմաններն են։*

*5. Արտասահմանի կոմունիստական պարտիաների առաջնակարգ դերը կայուն խաղաղության և ժողովուրդների անվտանգության համար մղվող պայքարում։*

*6. ՍՍՌՄ-ը՝ խաղաղության անպարտելի ճակատի հենարանն, հզորության հետագա ամրապնդման համար մղվող պայքարը սովետական բոլոր հայրենասերների սրբազան պարտքն է։*

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. Լենինի պատասխանները ամերիկյան և անգլիական բուրժուական թերթերի թղթակիցներին։ *«Ս. Հ.», 27 ապրիլի 1950 թ.։*

Ընկեր Ի. Վ. Ստալինի պատասխանները ամերիկյան «Ինտերնեշնլ նյուզ սըրվիս» գործակալության եվրոպական գլխավոր դիրեկտոր պ-ն Կինգսբերի Սմիտից 1949 թվի հունվարի 27-ին ստացած հարցերին: *«Ագիտատորի բլոկնոտ», 1949 թ. № 3, «Ս. Հ.», 1-ը փետրվարի 1949 թ.:*

Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ.— Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլուցիայի 32-րդ տարեդարձը: *Հայպետհրատ, 1949 թ., «Ագիտատորի բլոկնոտ», 1949 թ., № 22:*

Անում և ամրապնդվում է խաղաղության կողմնակիցների ճակատը: *«Պրավդա»-ի 1950 թ. մարտի 21-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի մարտի 22-ի համարում:*

Ժողովուրդները ըվեարկում են հանուն խաղաղության: *«Պրավդա»-ի 1950 թ. ապրիլի 3-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի ապրիլի 4-ի համարում:*



# ՆՈՐ ԳՐՔԵՐ

*Հայպետհրատի հրատարակությամբ լույս են տեսել.*

*Կ. ՄԱՐՔՍ, Ֆ. ԷՆԳԵԼՍ.*— Ընտիր երկեր, երկու հատորում *(1-ին ու 2-րդ հատորները): Յուրաքանչյուր հատորի գինն է 14 ռուբլի:*

*ՖՐԻԴՐԻԽ ԷՆԳԵԼՍ.*— Բնության դիալեկտիկան: *444 էջ, գինը 9 ռ. 30 կ.:*

---

Պատասխանատու խմբագիր՝
Ռ. ԽԱՉԱՏՐՅԱՆ